

## ԱՌԱՋԻՆ ԱՌԻԹՈՎ

---

Այսպիսի հրատարակութեան մը գաղափարը երկար ժամանակէ ի վեր խորհրդածութեանս առարկայ բրած էի, բայց մէկէ աւելի լուրջ պատճառներ յապաղեցուցին զայն: Այդ արգելքներէն դեռ կան ցցուած դիմացս, բայց եթէ անոնց բոլորին ալ հարթուելուն սպասէի, կարելի պիտի չըլլար իրականացնել բաղձանքս: Ուստի «լաւ է անագան, քան երբեք»ը կրկնելով, և քաջած ու հաւատացած Աստուծոյ անհուն ողորմութեանը միայն ապաւինած՝ կը ձեռնարկեմ հրատարակութեանը այս փոքրիկ ամսաթերթին, տալով անոր անուն մը որ ցարդ երբեք գործածուած ըլլայ որ և է տեսակ հրատարակութեան համար, «ԷՋՄԻԱԾԻՆ»: Ո՞ր Հայուն անծանօթ է այս անունը, ո՞ր Հայուն պաշտելի ըլլալու չափ սիրելի չէ ան: Կը ճանչնա՞ս, սիրելի ընթերցող, անկէց աւելի ականջիդ հաճելի, սրտիդ սիրելի քաղցր անուն մը: «ԷՋՄԻԱԾԻՆ», միակ անունն է անիկայ մեր մէջ, յորում կը խտանայ մեր քաղաքական, ազգային ու եկեղեցական կեանքի ամբողջ պատմութիւնը՝ իր բոլոր յուզիչ դրուագներով և նոյն իսկ Աստուածախառն իրականութիւններով:

Բացատրելու համար Էջմիածին անուան նշանակութիւնը, հարկ կըլլայ բացատրել մեր մշտաշարժ ազգին պատմութիւնը ամբողջ, մշտահալած եկեղեցիին կեանքը լրիւ: Էջմիածին Հայութեան սիրտն է եղած երկար դարերէ ի վեր, և պիտի շարունակէ ըլլալ այսուհետև ալ՝ որչափ ատեն որ կամեցեր է Աստուած և գոյութիւն ունի Հայը, որուն սիրտն է Ան: Եթէ դադրի այդ սիրտը բաբախելէ, Հայն ալ կը դադրի ապրելէ:

Ինչ գեղեցիկ բացատրած է Քրիստոս իր աշակերտներուն թէ, «Ես որթ եմ, իսկ դուք ուռ»: Ճիւղը երբ ծառէն կտրուի, ալ չապրիր ան: Էջմիածինն է Հայութեան որթը, իսկ մենք՝ անոր ճիւղերը, աշխարհի ո՛ր կողմն ալ գտնուինք: Հայ անունը կրող և օտար դաւանութեան մէջ ապրողներ ինչ կերպով որ վարդապետեն ու փաստաբանեն իրենց գիրքը, ծառէն կտրուած ճիւղեր են՝ միշտ չորանալու ենթակայ:

Ազգայնականութեան գաղափարի պաշտպանման՝ նախընթացը չունեցող ահեղ մարտն է որ կը մղեն այժմ աշխարհիս մեծ ու լուսաւորեալ ազգերը: Այդ գաղափարին համար անկեղծ հաւատք ունեցող Հայը չի կրնար հեռանալ այն Եկեղեցիէն որ կը հովանաւորէ Էջմիածինը, առանց կասկածի տակ ձգելու իր անկեղծութիւնը:

«Էջմիածին»էն աւելի յարմար անուն մը դժուար եղաւ ինծ գտնել զետեղելու համար ճակատը այս փոքրիկ պարբերականիս, որը խոնարհաբար կը համարձակիմ նուիրել Էջմիածնի ներկայ Գահակալի անուան, թէպէտև սահմանափակ շրջանակի մը մէջ, որպիսին է Ֆրէզնոյի Սուրբ Երրորդութիւն Եկեղեցւոյ շրջանակը:

Ուրեմն ձեզի համար է խօսքս, պատուական դաւանակիցք Հայաստանեայց Եկեղեցւոյ, սիրեցէ՛ք ազգին հետ ձեր Եկեղեցին, անոր հետ Էջմիածինն ալ: Առանց սիրելու այս վերջինը, չէք կարող սիրել առաջինները. առանց ճանչնալու զայն, չէք կարող ճանչնալ միւսները: Ահա այդ նպատակին պիտի ծառայէ այս համեստ պարբերականը՝ «Էջմիածին»ը, և պիտի առաջնորդէ ձեզի, առ այժմ դէթ ամիսը անգամ մը, խօսելով ձեզի հետ:

«Էջմիածին»ի բովանդակութիւնը միշտ պիտի ըլլայ կրօնա-բարոյական: Տեղ կրնանք տալ միայն այդ իմաստով մեզի ղրկուած ամփոփ ու շինիչ գրուածներու: Պիտի ունենայ նաև զուտ եկեղեցական լուրերու բաժին մը: Պիտի հրատարակենք ընդհանուր Եկեղեցւոյ վերաբերեալ ամենակարեւոր լուրեր, ինչպէս նաև տօնական օրերը ծանուցանող օրացոյցի բաժին մը:

Մօտալուտ ժամանակի մէջ, Մայր Հայրենիքի և մեր հայրապետներու վրայ տարածուած հեղձուցիչ մշուշին փարատուած ըլլալը և փրկութեան կենսաւէտ արշալոյսի մը ծագումը այս էջերու մէջ արձանագրելու հրճուանքը ունենալու ըղձանօք, կը վերջացնենք՝ «Էջմիածնի» հրատարակութեան առթիւ մեր առաջին խօսքերը:

Հովիւ Սուրբ Երրորդութիւն Եկեղեցւոյ
ՎԱՐԴԱՆ Ծ. ՎԱՐԴ. ԳԱՍՊԱՐԵԱՆ

## ՔՐԻՍՏՈՍԻ ԾՆՈՒՆԴԸ

Քրիստոսի Ծնունդը՝ ծնունդն է սիրոյ և խոնարհութեան մարդոց սրտերուն մէջ: Անոր յայտնութիւնը՝ յայտնութիւնն է արդարութեան և ճշմարտութեան բովանդակ մարդկութեան կեանքին մէջ: Ասոնք բոլորն ալ ի մի խտացնելով է որ Եկեղեցւոյ սրբազան բանաստեղծներէն մին այդ առթիւ երգած է մեր շարականներուն ամենէն ցնծուն և ցնցողը՝ —

Խորհուրդ մեծ և սքանչելի,
Որ յայսմ աւուր յայտնեցաւ.
Հովիւքն երգեն ընդ հրեշտակս,
Տան աւետիս աշխարհի:

Ծնաւ նոր արքայ
Ի Բեթղեհէմ քաղաքի.
Որդիք մարդկան օրհնեցէք,
Զի վասն մեր մարմնացաւ:

Անքաւելին երկնի և երկրի՝
Ի խանձարուրս պատեցաւ.
Ոչ մեկնելով ի հօրէ՝
Ի սուրբ այրին բազմեցաւ:

Այսօր ցնծան երկինք ի վերուստ,
Մեծապայծառ աւետեօք,
Եւ արարածք ամենայն
Զգեցան հանդերձ փրկութեան:

Շարականի մէջ ամենէ աւելի ժողովրդականացած կտորն է ասիկայ, իմաստն ալ եղանակին չափ պարզ ու հասկանալի: Ամէն Հայ որ մայր Հայրենիքին մէջ ծնած ու մեծցած է, շատ անգամ երգած է ասիկայ ու գոց գիտէ: Կէս գիշերին մէկ կանգուն բարձրութեամբ դիզուած ձիւներուն մէջէն իյնալ ելլալով, ինչ հրճուանքով, հոգեկան ինչ անճառելի ուրախութիւնով կը փութային եկեղեցի՝ Ծննդեան գիշերը երգելու համար «Խորհուրդ մեծ»ը:

Պատերազմ կոչուած հրէշը քանդեց ու կործանեց տարաւ ամէն բան: Ուրիշ զարմանալի խորհուրդ մըն է որ տարածուած է հիմա մեր երկրին մէկ ծայրէն միւսը: Քրիստոսի ծննդեան առթիւ մոմերով ու կանթեղներով լուսազարդուած, խաչերով ու աւետարաններով փառաւորուած, «Խորհուրդ մեծ»ով, «Ով զարմանալի»ով գովաբանուած այն սուրբ տաճարներն ու եկեղեցիները գոյութիւն չունին այժմ: Ալ չեն երգուիր հոն «Փառք ի բարձունս Աստուծոյ և յերկիր խաղաղութիւն ի մարդիկ հաճութիւն»: Մարդկային անխղճութեան և բարբարոսութեան զոհուած աւերակաց փլատակներուն տակ մնացին բոլոր այդ սրբազան գեղեցկութիւնները: Երանի՜ թէ կարենայինք զգալ զառն իրականութիւնը զէթ մասամբ, և այն ատեն մենք բոլորովին տարբեր պիտի ապրէինք քան ինչ որ կ'ապրինք այժմ: Քրիստոսի ծննդեան խորհուրդին մէջ ամենէն աւելի որոշ տեսնուածը ԽԱՂԱՂՈՒԹԻՒՆ ցուցմունքն է, ինչ որ գուշակած էին մարգարէներ, և հրեշտակներն ալ հովիւներուն հետ, նոյն առաջին առթիւ, երգեցին Բեթղեհէմի դաշտերուն մէջ: Բայց դարերու պատկառելի անցեալ մ'ունեցող քրիստոնեաներ այսօր կը ծաղրեն ու կը հեգնեն այդ խաղաղութիւնը, կը կործանեն ու կը պղծեն ի պատիւ այդ խաղաղութեան կանգնուած սրբազան հաստատութիւնները, որոնց խաչարարձ գմբեթները հանապազօր կը թնդային խաղաղութեան այդ վսեմ երգով: Բառեր կը պակսին բացատրելու համար այն ամօթն ու խայտառակութիւնը որ կայ այսօրուան կարգ մը մարդկային ցեղերու մէջն:

Քրիստոսի ծննդեան առթիւ այս խորհրդածութիւնն ընելով, բնաւ յաւակնութիւն չունինք յանձնարարելու մեր ազնիւ ընթերցողներուն, որ այդ ամօթն ու խայտառակութիւնը իրենք մաքրելու ելլեն, խաղաղութիւն տարածեն ամբողջ աշխարհին վրայ ու ձեռնարկ ընեն բոլոր կործանուած երկիրները վերաշինելու: Ասոնք շատ վեր են քու կարողութենէդ. կրնա՛ս խորհիլ ասոնց վրայ, բայց գործնականին մէջ չես կարող օգնել: Խաղաղութեան բաղձանքներդ չես կարող հասցնել արիւնարբու թագակիրներու սրտերուն. բայց կրնաս զանոնք օգտակար ընել քու անձիդ և ընտանիքիդ մէջ: Չես կարող վերցնել պատերազմին բերած ամբողջ ամօթն ու խայտառակութիւնը, բայց կրնաս զսպել քու չար կամքդ և սանձել կրքոտ ու անխոհեմ կիրքերդ, որոնք այնքան մեծ ամօթի և խայտառակութեան կը մատնեն քեզ ու քեզմով քու ընտանիքդ ու ցեղդ: Չես կարող վերաշինել պատերազմին կործանած ամբողջ գիւղ ու քաղաքները, եկեղեցիներն ու տաճարները, դպրոցներն ու հիւանդանոցները, բայց կրնաս զարմանել անցեալին մէջ ունեցած սխալներդ, մաքրել սիրտդ ազնիւ փափաքներով, բուժել միտքերդ լուրջ գաղափարականութիւնով, սրբել հոգիդ

բարի և ժուժկալ կեանք մը ապրելով և ի լրումն ամենայնի Աստուծոյ կամքը կատարելով : Այն ատեն միայն իրաւունք կունենաս տօնելու ծնունդը խաղաղութեան Իշխանին, որ կը ծնանի քու այ սրտիդ մէջ, որով խաղաղութիւն կունենաս քեզ շրջապատող բոլոր մարդկանց հետ անխտիր ու Աստուծոյ քեզի պարգեւած օրհնութիւններէն լիաառատ բաժին հանել քանդուած Հայրենիքիդ և անոր որբացած զաւակներուն :

Վ. Վ.



## Ս. ԾՆՆԴԵԱՆ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԵԱՆ

### Տարբերութիւնը ի մէջ Հայոց և օտար ազգաց :

---

Հայաստանեայց Եկեղեցին միւս եկեղեցիներէն որոշող ամենէն աչքառու կէտն է անոր՝ Յիսուսի ծննդեան տօնակատարութիւնը Յունուար 6-ին (այսինքն Յունուար 19-ին բստ նոր տոմարի), մինչդեռ բոլոր միւս արեւմտեան և արեւելեան (Հռոմէական, յունական, ռուսական ևն.) եկեղեցիները 25ը (Յունվար 7 բստ նոր տոմարի) կը տօնեն իրրև Յիսուսի ծննդեան տարեդարձը : Այս տօնակատարութեան տարբերութիւնը հինգերորդ դարէն ի վեր շատ անգամ վիճաբանութեան առարկայ եղած է Հայոց և Յունաց ու Հռոմէականաց միջև, և յաճախ Հայերը ամբաստանուած են իբրև մոլորեալներ և Քրիստոսի մարդեղութեան մասին սխալ դաւանանք ունեցողներ, որ ամբաստանութեան իբրև փաստ կը մատնանշեն մեր՝ Ս. Ծննդեան տօնի Յունվար 6-ին կատարելն : Մեզ համակրող և բարեկամ օտարներ, որպէս և մերայիններէն շատեր որք միշտ նմանութիւն կը փնտռեն մեր ազգային և օտարաց սովորութեանց և հաստատութեանց միջև, յաճախ կը հարցնեն այս տարբերութեան պատճառն և կը շուարին գոհացուցիչ պատասխան մը գտնելու, որովհետև չեն խորհիր որ այս տօնակատարութեան մէջ ոչ թէ լոկ ծիսական և թուականի, այլ նոյն իսկ տօնի ըմբռնումի տարբերութիւն կայ : Հարցասէրներու առարկայները կրրնային մեծաւ մասամբ փարատուիլ եթէ միայն մեր տօնացոյցի մէջ նշանակուած յիշեալ տօնի բացատրութիւնը բաղդատէին օտար ազգաց Քրիստմըսի բացատրութեան հետ : Վերջինները Դեկտեմբեր 25-ին կը կատարեն ոչ այլ ինչ բայց եթէ Քրիստոսի՝ Մարիամ կոյսէն Բեթլեհէմի մէջ ծնանելուն տարեդարձն, մինչդեռ մեր Տօնացոյցը կը հրահանգէ կատարել «զտօն Աստուածայայտնութեան» Փրկչին. որով կը հասկնանք ոչ թէ միայն Աստուածորդւոյն յայտնուիլն աշխարհի մարմնաւոր ծննդեամբ, այլ նաև իր գերմարդկային գործերովը (հրաշքներով) և ի վերուստ աստուածային վկայութեամբ (ինչպէս Թաբորական լերան վրայ), և աւանդապէս Յովհաննէսէն մկրտուած ատեն Յորդանան գետին մէջ, երբ Ս. Հոգին աղաւնակերպ իջաւ անոր վրայ և ի յերկնից ձայն լսուեցաւ թէ՝ Դու ես որդի իմ սիրելի, ընդ քեզ հաճեցայ : Մեր արդի ժողովրդական սովորութիւնը՝ Յունուար 6-ի տօնը «Ս. Ծնունդ» կոչելն օտար ազգաց հետ չփում ունենալու հետեւանօք և անոնց նմանելու ձիգէն յառաջ եկած է. որպէս զի երբ անոնք ըսեն «մեր Քրիստմըսը Դեկտեմբեր 25-ին է», մենք ալ ըսենք՝ «մերը Յունուար 6-ին (այսինքն 19-ին) է : Մեր այժմեան Տօնացոյցներուն մէջ տեսնուած «Ս. Ծննդեան» յաւելումն ալ համեմատաբար նոր է և ճիգ այդպիսի մտածումով և օտարաց կասկածները փարատելու նպատակաւ եղած է : Իրողութիւնն այս՛ է որ անոնց առումով մենք Քրիստմըս չունինք : Մեր ազգային հնագոյն և աւելի ընական ժողովրդական անունը այս տօնի՝ ոչ թէ Ս. Ծնունդ էր, այլ Ջրօրհնէք կամ Տօն Ջրօրհնեաց :

Ծննդեան տարեդարձ կատարելու սովորութիւնը ի հնումն արեւելեան ազգաց խորթ անծանօթ էր, ինչպէս որ հիմայ ալ դեռ ուրեք և միայն արեւմտեան ազդեցութեան ենթակայ անհատներու կողմէ ընդունելութիւն գտած է : Ամբողջ հին Կտակարանի մէջ միայն մէկ անգամ այսպիսի հանդիսի մը ակնարկութիւն կը գտնենք, այն ալ երբ Մակաբայեցւոց ատեն Սելեւկիացի Անտիոքոս թագաւորը կը պարտաւորցնէր հրեաները ամսէ ամիս իր ծննդեան ի պատիւ զոհ մատուցանել (Բ. Մակ. Զ. 7) : Նոյնպէս Նոր Կտակարանի մէջ մէկ անգամ միայն յիշուած է այսպիսի հանդէս մը, երբ Հերովդէս իր ծննդեան տարեդարձին առթիւ ընծայք մը տուաւ իր նախարարներուն (Մար. Զ. 21) : Սակայն այս երկու դէպքերն ալ արեւմտեան ազդեցութեան արդիւնք են և բոլորովին օտար հրէական ազգային սովորութեանց : Իսկ Հայոց մէջ

մինչև ցայսօր ծննդեան տարեդարձ կատարելու սովորութիւնը ընդհանրացած չէ, այլ անուանակոչութեան տօնախմբութիւնն է որ կէս կրօնական զգացումով կը կատարուի իւրաքանչիւր ընտանիքի մէջ: Նոյն իսկ արեւմտեան եկեղեցին սկիզբէն կը փարանէր Յիսուսի ծննդեան տօնը կատարել, որովհետև այն ատեններ այդպիսի տօնակատարութիւն մը հեթանոսական կռապաշտութեան պաշտամունքներէ անբաժան էր. և միայն երրորդ և չորրորդ դարերու մէջ, երբ այլ ևս կռապաշտութեան վերադառնալու երկիւղը անցած էր, հետզհետէ սկսան Յիսուսի ծննդեան տօնը կատարել, իրենց մեծ ազգային հեթանոսական տօնի մը (Սատուրնալիա) փոխարէն: Սակայն արևելքի մէջ այդպիսի ազգային պահանջ մը չկար, և կրօնական տեսակէտով Քրիստոսի ծնունդն անոր աստուածայայտնութեան միայն մէկ մասը կը կազմէր, որոյ լրացուցիչ մասերն էին անոր վերայիշեալ միւս երկրաւոր տնօրէնութիւնները և գերազանցապէս անոր մկրտութեան ատեն եղած երկնային յայտնութիւնը: Այս վարդապետական հիման վրայ նախկին արևելեան որպէս և արեւմտեան եկեղեցիք Աստուածայայտնութեան տօնը (ոչինչ նուազ չքեղ ու հանդիսաւոր կերպիւ քան զՅարութեան սուրբ տօնը) կը կատարէին Յունուար 6-ին, երբ տակաւին առանձին Ս. Ծննդեան տօն կատարելու խօսք չկար. և անյիշատակ ժամանակներէ ի վեր քրիստոնեայք իրենց սրբազան պաշտամանց միջոցին զիրար կ'ողջունէին ի համբոյր սրբութեան «Քրիստոս ի մէջ մեր յայտնեցաւ» բանաձևով: Այսպէս Հայաստանեայց Եկեղեցին ալ մինչև չորրորդ դարուն վերջերը բուն հնաւանդ ընդհանրական եկեղեցւոյ սովորութեան Յունուար 6-ին կը կատարէր Աստուածայայտնութեան տօնը՝ գլխաւորաբար Քրիստոսի ծննդեան և մկրտութեան յիշատակութեամբ: Իսկ Լատին-Հռովմէական եկեղեցին, որ սկիզբէն մեզ պէս կը կատարէր Աստուածայայտնութեան տօնը, ոչ թէ միայն Ս. Ծննդեան յիշատակութիւնը անջատեց և Դեկտեմբեր 25-ին փոխադրեց, այլ նոյն իսկ Յիսուսի մկրտութեան յիշատակութիւնը իսպառ ջնջեց իր Տօնացոյցէն, և այսօր Հռովմէականաց յայտնութեան տօնը զոր կը կատարեն Յունուար 6-ին, ոչ թէ Յիսուսի մկրտութեան այլ արևելեան մոգուց այցելութեան յիշատակութիւնն է: Արեւմուտքի մէջ ծագում առած Դեկտեմբեր 25 Ս. Ծննդեան տօնակատարութեան սովորութիւնն չորրորդ դարու վերջերը կամաց կամաց արևելքի յունական եկեղեցւոյն մէջ ալ մուտք գործեց: Ս. Ոսկեբերան յամի 388 Անտիոքայ մէջ խօսած մէկ քարոզին մէջ զայն կը պաշտպանէ: Այդ թուականէն վաթսուն տարի վերջ Յունական եկեղեցին պաշտօնապէս կ'ընդունի Ս. Ծննդեան տօնի անջատումն Աստուածայայտնութեան տօնէն, և Յունվար 6-ին կը կատարէ միմիայն Յիսուսի մկրտութեան յիշատակն: Կ. Պոլսոյ Պրոկլոս պատրիարքը Հայոց Սահակ Պարթև կաթողիկոսին կը հաղորդէ այս տօնական փոփոխութիւնը. և Սահակ թէպէտև յօժար է, Տիեզերական Պատրիարքի թելադրութիւնը նկատողութեան առնելու, սակայն Հայաստանի այդ ատենուայ քաղաքական խռովայոյզ վիճակը (Վարդանանց պատերազմը այդ միջոցին տեղի ունեցաւ) արգելք եղաւ որևէ գործնական քայլ առնելու, և անկէ քիչ վերջ Քաղկեդոնի ժողովը և անոր յաջորդող տարաձայնութիւններ Հայաստանեայց Եկեղեցին յունական եկեղեցւոյ հաղորդակցութենէն իսպառ բաժնեցին: Հետևաբար մեր Եկեղեցին մնաց անփոփոխ ինչպէս իր վարդապետութեանց նոյնպէս և իր տօնակատարութեանց մէջ, և յոյն ու լատին եկեղեցեաց մէջ կատարուած նորաձևութեանց ու փոփոխութեանց մասնակից չեղաւ:

Մեր եկեղեցւոյ հայրերը Յունուար 6-ին Ս. Ծնունդն և Մկրտութիւնը կատարելու մեր սովորութիւնը՝ առաքելական աւանդութեամբ ստացած եւ վերոյիշեալ պատմական փաստերով հաստատուած լինելու պարագայէն ի զատ, կը հիմնեն Ղուկ. Գ. 23 վկայութեան վրայ յորում ըսուած է թէ «Եւ ինքն Յիսուս էր ամաց իբրև երեսնից սկսեալ», որով կը հասկնան թէ Յիսուս ըստ վկայութեան Ղուկասու մկրտուեցաւ զկնի երեսուն ամաց նոյն օրը յորում ծնած էր:

ԹԷՈԴՈՐՈՍ ՔԱՀԱՆԱՅ



## ՆՈՐ ՏԱՐԻՆ

---

Վերջացող տարիին մէջ մեր ազգին համար մխիթարական որեւ է բան չունեցանք, համազգային ցաւի և սուգի մէջ, բոլոր 1917 թուականին «երթաս բարով»ը: Ու երբ կը մտնենք նոր թուականի մը, նոր տարիի մը մէջ, նոյն ցաւերով, նոյն սուգով կ'ողջունենք զինքը, որ կուգայ աւելի տանջող, աւելի պրկող, աւելի կատաղեցնող վիշտերով: Երբ աչքերնիս կ'ուղղենք դէպի քաղաք. հորիզոնը՝ փոթորկալից սեւ սեւ ամպեր միայն կը տեսնանք հոն դիզուած: Երեք ու կէս տարի առաջ Եւրոպան քաղաքակրթութեան ու քրիստոնէական լուսաւորութեան իր գեղեցիկ պատմուճանը ծալլեց մէկդի դրաւ, ոտքի տակ առաւ խաչով ու աւետարանով իրեն սորուած տիեզերական եղբայրութեան վսեմ սկզբունքները բոլոր. մարդակեր գազանի մորթին մէջ մտաւ, ձեռք առաւ զէնքը ջարդարար, սրեց իր ժանիքները ու սկսաւ դժոխքը նախանձելի ընող վիճակի մը վերածել դարերու աշխատութեամբ դրախտի վերածուած աշխարհին մասերը:

Մեր ցեղն ու մեր Հայրենիքը ամենաթշուառ զոհերն եղան այդ վայրագութեանց: Որոնցմէ ազատուած ափ մը Հայութիւնը ամենամութ անորոշութեան մէջ կ'ապրի այսօր: Այժմ գոյութիւն չունի նաեւ մեր եկեղեցական իշխանութիւնն ալ, որ ամէն ինչ էր մեզի համար: Գաւառի Առաջնորդութեանց հետ չկան Պոլսոյ Պատրիարքութիւնը, Կիլիկիոյ Կաթողիկոսութիւնը. չենք գիտեր ինչ եղաւ Երուսաղէմի Պատրիարքութիւնը: Էջմիածնի Կաթողիկոսական աթոռը ամենավտանգաւոր ալեկոծութեան մատնուած կերթայ՝ չենք գիտեր դէպի ո՛ւր: Աւելի քան երբեք տխուր է Ամերիկահայոցս վիճակը: Եկեղեցին չունի Առաջնորդութիւն, չունի հեղինակութիւն: Մայր երկրի հալածանքը, այս տեղի ազատութիւնը, այն տեղի ջարդն ու տեղահանութիւնը, այս տեղի առեւտուրն ու հանգստաւէտ վիճակը, այն տեղի խաչելութիւնը, այս տեղի անհամերաշխութիւնն ու անհամաձայնութիւնը այն տեսակ վէրք մը բացին այս ազգի սրտին՝ Եկեղեցիին վրայ, որ մարդ իրաւամբ կը շուարի և չի կրնար ըսել թէ ինչ դեղ ու դարման գործածելու է բուժելու համար զայն:

Բայց բոլոր այս յուսահատական երեւոյթներուն հանդէպ, մենք այնչափ առաջ չենք երթար ըսելու համար թէ Սողոմի և Գոմորի ժողովուրդներուն պէս այս ազգը խոպան պիտի կործանի, չբանայ՝ պատերազմի երկինքէն տեղացող հուրին ու ծծումբին տակ: Ո՛չ. ես կը հաւատամ թէ, յիսուն արդար, երեսուն արդար, տասը արդար դեռ կան այս ազգին մէջ: Եկեղեցիին և ազգին նուիրուած նուիրական շահերը լուրջ կերպով ըմբռնողներու մեծ թիւ մը կայ մնացած մեր բեկորներուն մէջ, որ օր մը պիտի գիտնայ դարմանել դարերէ ի վեր իրեն մայրութիւն ընող Եկեղեցւոյ սրտին մէջ բացուած այդ խոշոր վէրքը, ու այս անգամ ալ վերականգնէ՝ շատ անգամ խաչի ծանրութեան տակ ինկած այս ազգը:

«Էջմիածին»ը իր անդրանիկ թիւով և Հայկական Նոր Տարիի առիթով կը թելադրէ քեզի և կը սրտապնդէ՝ զքեզ, ով պատուական զաւակդ Մայր Եկեղեցւոյ, որ յուսահատի և յոռետեսի քայլերով չի մտնես նոր տարիի սեմերէն ներս: Ալեկոծեալ ծովուն վրայ է որ կը քալես: Ուժով բռնէ ՀԱՒԱՏՔի բազուկէն և մի՛ վարանիր, մի՛ երկնչիր. քիչ մը ես և ահա կը հասնիս նաւահանգիստը խաղաղ:

«Էջմիածին» այս կենդանի հաւատքով կ'ողջունէ Հայկական Նոր Տարին բոլոր Հայերուն և կը մաղթէ որ շնորհաբեր ըլլայ այն ազգիս և բոլոր աշխարհին: Վ. Վ.



## ՍԻՍՕՒԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻՆ ՆՈՒԷՐ

---

(Հետեւեալը որ կ'արտատպենք Աղեքսանդրիոյ «Արեւ»էն, կը յանձնարարենք Եդեմցիներու ուշադրութեան:)

* * *

Խմբագրութիւն «Արեւ»ի

Աղեքսանդրիա, Եգիպտոս

Քաղաքիս մօտիկ՝ Եդեմ կոչուած հայ գաղութին մէջ ընտանեկան ուրախութեան մը պահուն հանգանակութիւն բանալով՝ քանի մը Կիլիկիացի Հայեր հաւաքած են 31 տոլարի փոքրիկ գումար մը և որ մեր միջոցաւ յարմար տեղ մը ղրկել փափաքեցան:

Փոր Սաիտի Սիսուան վարժարանը նպատակայարմար սեպելով, այդ գումարը ներփակ չէքով մը ղրկեցի Ձեր սիրելութեան. հաճեցէք յանձնել յիշեալ վարժարանի խնամակալութեան:

Ողջունիւ սիրոյ և յարգանօք

Հոգ. Հովիւ Ս. Երր. Եկեղեցւոյ

ՎԱՐԴԱՆ Ծ. ՎՐԴ. ԳԱՍՊԱՐԵԱՆ

## ՀԱՅ ԵԿԵՂԵՑԻ

### Յունվար 19-ին տօն Ծննդեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի

Յունվար 19-ին, Շաբաթ օր, Հայ Եկեղեցին պիտի տօնէ՝ մեծահանդէս տօնը Քրիստոսի Ս. Ծննդեան: Նախորդ Ուրբաթ երեկոյ ճրագալոյցի կարգ կը կատարուի. փոքրիկներ գիրք կը կարդան եւ պատարագ կը մատուցուի: Այն կարգը կըսկսի Ուրբաթ երեկոյ ժամը 4·30-ին եւ կը տեւէ մինչեւ 6·30:

Հետեւեալ Շաբաթ առաւօտուն ժամերգութիւնը կըսկսի ժամը ինին եւ կը շարունակուի մինչեւ ժամը մէկ, պատարագով եւ Ջրօրհնեաց հանդիսաւոր արարողութիւնով:

Ներկայ յայտարարութիւնով կոչ կ'ընենք ձեզի, Հայ Եկեղեցւոյ բոլոր զաւակներուդ, որ յիշելով Հայրենիքի մէջ անցուցած Ծնունդի խանդավառ օրերն, ծիներու եւ փոքրիկներու մէջ, յիշելով նաեւ ներկայիս նոյն Հայրենիքի մէջ գոյութիւն ունեցող ահաւելի տառապանքը եւ աչքի առաջ ունենալով այս տեղի ձեր բաղդաւոր վիճակն, այդ օրը գէթ մէկ երկու ժամուան թեթեւ ցուրտն ու անձնական ամէն գործ ձգելով, բարի ըլլաք միահամուռ եկեղեցի գալու, պատշաճ վայելչութիւնով տօնելու համար Ծնունդը խաղաղութեան իշխանին:

Մտքերնիդ ունեցէք նաեւ սա կարեւոր պարագան որ հետեւեալ Կիրակի առաւօտուն, Ծննդեան երկրորդ օրն ըլլալով, նոյնպէս մեծ բազմութիւն պիտի ըլլայ եկեղեցին. պատարագ պիտի մատուցուի եւ քարոզ պիտի խօսուի եւ ընդհանուր ննջեցելոց համար հոգեհանգիստի պաշտօն պիտի կատարուի:

## ԹԵԼԱԴՐՈՒԹԻՒՆՆԵՐ

Շատով բաժանորդագրուէ, եւ հասցէդ գրէ մեզի շատ որոշ գրելով անունդ եւ մականունդ, եւ տունիդ կամ նամակատուփիդ թիւը:

Ամէն մէկ թիւը որ կ'ստանաս, ուշադրութեամբ կարդա եւ պահէ խնամքով: Տարի մը վերջը 12 թիւերը միասին կազմելով պիտի ունենաս շահեկան հատորիկ մը, որուն համար պիտի տանք սիրուն կողք մը:

Բոլոր հայ զինուորները «Էջմիածին»ը կրնան տանիլ ձրիաբար, պայմանաւ որ իրենց հասցէները գրեն մեզի:

## —ՀԱՅ ԵԿԵՂԵՑԱԿԱՆՆԵՐՈՒ ՊԱՏՐԱՍՏՈՒԹԻՒՆ

Ստոյգ աղբիւրէ կը տեղեկանանք որ Ամերիկայի մէջ Հայ եկեղեցականներ պատրաստելու համար, վերջին Երեսփոխանական Ժողովոյ որոշումով, Գեր. Տ. Բարգէն Սրբազանի կողմէ եղած ձեռնարկները յաջող ճամբու մէջ կը գտնուին: Համաձայնութիւն գոյացած է Ամերիկեան առաջնակարգ եկեղեցական հաստատութիւններու հետ, որոնք յանձն առած են Հայ եկեղեցական ուսմանց յատուկ բեմ եւ դասաւանդութիւն հաստատել եւ ուրիշ դիւրութիւններ տալ: Նիւ Եօրք Խնամակալութիւն մըն ալ կազմուած է, որ կ'ապահովէ ձեռնարկին նիւթական կողմը: Եթէ ծառայութեան յօժար եւ նուիրեալ ուսանողներ գտնուին, որոնք պահանջուած պայմանները կը լրացնեն, կարելի պիտի ըլլայ անմիջապէս գործի ըսկսիլ: (Տաւրոս)

## ՏՕՆԱՑՈՅՑ

Յունվար

18, Ուր. Դ2.— Երեկոյին ճրագալոյց Ծընընդեան, Նաւակատիք: Պատարագ և Նախատօնակ: Խթում:—

19, Շր. Դ4. — ՏՕՆ ԾՆՆԴԵԱՆ ԵՒ ԱՍՏՈՒԱԾԱՅԱՅՏՆՈՒԹԵԱՆ ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ: Տօն Ութօրեայ:

20, Կիր. Ա2.— Բրդ օր Ծննդեան: Մեռելոց:

26, Շր. Դ2.— Ըրդ օր Ծննդեան, Տօն Յայտնութեան եւ Անուանակոչութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի:

27, ԿԻՐ. Դ4. — Ա. զկնի Ծննդեան:

28, Բշ. Ա2 — Տօն Ծննդեան Սրբոյն Յովհաննու Կարապետին:

29, Գշ. Ա4 — Տօն Սրբոցն Պետրոսի Հայրապետին, Վլասայ Եպիսկոպոսին եւ Արիստոգոմայ սարկաւագին:

## ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԼՈՒՐԵՐ

Մահ.— Ստեփան Աթաշեան, Մալաթիացի, գաւառական հիւանդանոցի մէջ մեռաւ Յունվար 1-ին, եւ թաղուեցաւ Ազգ. գերեզմանատան մէջ:

Մկրտութիւն.— Տէր եւ Տիկին Պալ Ալանեանի երախան մկրտուեցաւ Զապէլ անունով, Յունվար 3-ին:

Պսակ.— Յարութիւն Կէկիչեան եւ Օր. Գլօթիլտ Մարգարեան պսակուեցան Ս. Երրորդութիւն եկեղեցւոյ մէջ, Յունվար 5-ին:



## Ս. ԵՐՐՈՐԴՈՒԹԻՒՆ ԵԿԵՂԵՑՒՈՅ ԿԱՐԳԵՐԸ

Կիրակի առաւօտ —

| | ժամեր |
|---|---|
| *Սկզբնաւորութիւն Ժամերգութեան* | 9 |
| *Սկզբնաւորութիւն Պատարագի* | 10·30 |

Պատարագ չեղած Կիրակիներ —

| | |
|---|---|
| *Սկզբնաւորութիւն Ժամերգութեան* | 10 |
| *Քարոզը մօտաւորապէս* | 11·30 |

Կիրակնօրեայ Դպրոց —

| | |
|---|---|
| *Սկզբնաւորութիւն դասախօսութեանց* | 9·30 |
| *Վերջ դասախօսութեանց* | 10·30 |

Ծնթ. — *Կիրակնօրեայ Դպրոց կը յաճախեն 150է աւելի երկսեռ աշակերտներ, որոնց կը դասախօսեն տասը ուսուցիչներ, որոնք աշակերտաց հետ միասին միշտ ներկայ կըլլան եկեղեցական պաշտամանց :*

—0—

## ՀԱՅԿԱԿԱՆ ԴՊՐՈՑ

*Հայ դպրոցը բաց է ամեն օր կէսօրէ վերջ ժամը 2·30է 5, բացի Շաբաթ և Ամերիկեան արձակուրդի օրերէն : Ուրբաթ օրերը եկեղեցական և ազգային երգեր սորվեցնելու յատկացուած է, իսկ միւս չորս օրերը Հայերէն լեզուի ուսուցման : Տեսուչ մը և երեք օրիորդներ կը դասախօսեն : Դպրոցի մտից տուրքն է մէկ տոլար ամբողջ շրջանին համար :*

## ԴՊՐԱՑ ԴԱՍ

*Դպրաց Դասուն եկեղեցական և ազգային երգեր կուսուցուին Ուրբաթ երեկոները՝ ժամը 7·30-9 : Այս դասերուն կրնայ աշակերտիլ ամեն Հայաստանեայց Եկեղեցւոյ զաւակ անխտիր, առանց սեռի և տարիքի խտրութեան :*

## ՄԿՐՏՈՒԹԻՒՆ ԵՒ ՊՍԱԿ

*Մկրտութիւն կը կատարուի սովորաբար Շաբաթ օրեր, և բացառիկ պարագաներու տակ՝ Կիրակի առաւօտ ժամը 8-ին : Իսկ պսակները, օրէնքով արգիլուած օրերէն զատ, որ և է ատեն կրնայ ըլլալ : Բայց զգուշանալու է Շաբաթ երեկոները հարսանիք ընելէ : Թէ մկրտութեան և թէ պսակի համար Հոգաբարձութեան ու Հովուին կանխաւ լուր տալ անհրաժեշտ է :*

Ուշադրութիւն — *Վարչական մարմիններ լաւ կընեն եթէ Կիրակի օրեր ժողովներով չզբաղեցնեն եկեղեցւոյ հովիւը, որպէս զի այցելութիւններ ընէ :*

## Ս. ԵՐՐ. ԵԿԵՂԵՑՒՈՅ ԸՆԴՀ. ԺՈՂՈՎՈՅ ԴԻՒԱՆ

Տիար ՅԱԿՈԲ Մ. ՆՇԿԵԱՆ՝ Ատենապետ
Տիար ՎԱՀԱՆ ՆՇԿԵԱՆ՝ Ատենադպիր

## ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

*Ներկայ տարւոյ Հոգաբարձութիւնը կազմուած է հետեւեալ կերպով.*

Տիարք՝ ՄԻՆԱՍ ԽՕԼԼԻԿԵԱՆ՝ Ատենապետ
ՅԱՐՈՒԹԻՒՆ ՌՍՏԻԿԵԱՆ՝ Ատենադպիր
ԱԴԱՄ ՊԵՏՈՅԵԱՆ՝ Գանձապահ
ՄԵԼՔՈՆ ՏԱՎՈՒՐԵԱՆ՝ Անդամ
ՄԱՐՏԻՐՈՍ ՀԱԼԼԱԵԱՆ՝ Անդամ
ՄԱՐԳԱՐ ՇԱՀՊԱԶԵԱՆ՝ Անդամ
ՄԱՄԲՐԷ ԳՈՐԳՄԱԶԵԱՆ՝ Անդամ

Սուրբ Երրորդութիւն Եկեղեցւոյ

## ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ԳՐԱԴԱՐԱՆԻ ՄԻՈՒԹԻՒՆ

| *Գրադարանը բաց է՝* | ժամեր |
|---|---|
| Երեքշ. և Հինգշ. երեկոները | 7·30—9·30 |
| Կիրակի օրեր կէս օրէ վերջ | 2—4 |

*Գրադարանի Միութիւնը կը ստանայ այժմ 15 ազգային թերթեր, ու 500ի չափ մեծ ու փոքր հայերէն գրքեր ունի :*

ԷՋՄԻԱԾԻՆ
Կրօնա-Բարոյական Ամսաթերթ
Հրատարակութիւն՝
ՎԱՐԴԱՆ Ծ. ՎԱՐԴԱՊԵՏ ԳԱՍՊԱՐԵԱՆԻ
Բաժանորդագին՝ տարեկան մէկ տոլար
*Նամակ, ծրար եւ. դրկուելու են վարի հասցէով : Բաժանորդագինը կանխիկ է :*

VOL I, NO. 1, JAN., 1918 PRICE 10 CENTS

# ETCHMIADZIN
A RELIGIOUS MONTHLY PAPER
PUBLISHED BY
REV. V. V. KASPARIAN
P. O. Box 290 Fresno, Cal.
SUBSCRIPTION PRICE $1.00 PER YEAR